# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.ع.م. - ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز : السيدة عايدة سيرد بيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) • Tél.915013
Adresse Télégraphique TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef; SARKIS BALAYAN

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԵԱՆ

Հիմնուած 1948ին
Տպաքանակ 3000

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 427 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 4 ՄԱՅԻՍ 1972 | ՀԱՏԸ ԶԵՐԹԻ 3 եգ. դհկ. կամ 25 Լիբ. դհկ. | عدد رقم ٤٢٧ – الخميس ٤ – مايو ١٩٧٢


# ՄԻԱՑԵԱԼ ԱԶԳԱՅԻՆ ՃԱԿԱՏԻ ՑԱՆԿԻՆ ՅԱՂԹԱՆԱԿԸ, ԱՄԷՆ ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ՀԱՅՈՒ ՅԱՂԹԱՆԱԿԸ ՊԻՏԻ ԸԼԼԱՅ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ԽՈՐ ՀԱՄՈԶՈՒՄՈՎ ԵՒ ՀԱՍՏԱՏ ՀԱՒԱՏՔՈՎ

### (ԳԱՀԻՐԷԻ ԹԵՄԱԿԱՆԻ ՄԱՍՆԱԿԻ ԸՆՏՐՈՒԹԵԱՆՑ ԱՌԹԻՒ)

Աշխարհիս բոլոր այն երկիրներուն մէջ, ուր ընկերային ազատ և ժողովրդական կարգեր հաստատուած են, քաղաքացիները զանազան առիթներով դէպի քուէատուփ կը դիմեն, ընտրելու՝ ըլլայ երկրին նախագահը, ըլլայ Վերին Ժողովներու (Խորհրդարան, Ծերակոյտ կամ Ազգային Ժողով) անդամները, որոնց հակակշիռին ներքև պարտին գործել կառավարութիւնն ու երկրին այլ մարմինները։ Եւ իւրաքանչիւր քուէարկող քաղաքացիական իր պարտականութիւնը կատարելու համար կ'առաջնորդուի քուէատուփ։

Հայ ժողովուրդը ևս, իր Մայր Հայրենիքին մէջ, քաղաքացիական սոյն պարտականութիւնը կը կատարէ հպարտութեամբ և պարտաճանաչութեամբ։

Սփիւռքի զանազան երկիրներու մէջ բնակութիւն հաստատած հայերը՝ եթէ որպէս տեղւոյն քաղաքացիներ, բնիկներուն հետ կը մասնակցին երկրին զանազան ընտրութիւններուն՝ կատարելով քաղաքացիի իրենց պարտականութիւնը, և սակայն անոնք առաւել ևս պարտականութիւնը ունին ընտրելու իրենց համայնքային մարմինները, մարմիններ՝ որոնց վստահուած է հայ համայնքի կրօնական, ազգային և կրթական հաստատութիւնները և անոնց բարւոք մատակարարութիւնը։

Այս առթիւ անհրաժեշտ է մատնանշել, որ հայ համայնքներէն իւրաքանչիւրը՝ ունենալով հանդերձ ինքնուրոյն ծրագիր և կանոնագրութիւն, չի կրնար գործել և գոյատևել լոկ իբր առանձին հատուած։ Հայ համայնքները՝ բաղկացած ըլլալով կրօնական և ազգային հաստատութիւններէ, չեն կրնար և ազատ չեն իրենց կրօնական և ազգային գործունէութիւնները ըստ հաճոյս կատարել, քանի որ հայ եկեղեցին և հայ ժողովուրդը, աշխարհի որ կողմին վրայ ալ շինուած և բնակութիւն հաստատած ըլլան, մի և անբաժանելի մասերն են Հայաստանեայց Մայր Աթոռին՝ Սուրբ Էջմիածինին և այն ժողովուրդին՝ որ ունի Մայր Հայրենիք և պետականութիւն։

Ցստակ ըլլալու համար շեշտենք, որ սփիւռքի ամէն հայ համայնք իր եկեղեցիով՝ կապուած է Ս. Էջմիածինին և ազգային կապերով՝ Մայր Հայրենիքին։ Այն բոլոր հայ համայնքները որոնք փորձեն խզուիլ այս երկու նուիրականութիւններէն, անպայման կորստեան և անհետացման դատապարտուած կ'ըլլան։

(Շարունակութիւն տես. էջ 6)

Քուէարկող հայրենակից,

Մի՛ տատամսիր այս Կիրակի քու քուէդ տալու «Միացեալ Ազգային Ճակատ»ի ցանկին, որ բաղկացած է մեր համայնքին գործերուն տեղեակ եւ փորձառու անաչառ ազգայիններէ եւ որոնց հաւատարմութիւնը՝ հանդէպ Մայր Աթոռ Ս. Էջմիածինին եւ Մայր Հայրենիքին, անխախտ է եւ ճմարիտ:

## ԿՈՉ ԵԳԻՊՏԱՀԱՅՈՒԹԵԱՆ

Սիրելի եգիպտահայ ընտրողնե՛ր,

7 Մայիս 1972ին, Գահիրէի Թեմական Ժողովի կազմը պիտի ամբողջացուի 12 անդամներով՝ մահացած, մեկնած, հրաժարած և վիճակով դադարեալ երեսփոխաններուն տեղ։

Անցնող հինգ տարիներուն, Ձեր քուէներով ընտրուած Թեմական Ժողովը յաջողեցաւ պատիւով գլուխ հանել իրեն վստահուած պաշտօնը, զոհողութեամբ և նուիրումով ծառայելով համայնքին։

Այս շրջանին, Ազգային Իշխանութիւնները կրցան չէն և պայծառ պահել մեր ազգային բոլոր հաստատութիւնները (եկեղեցի, դպրոց, Առաջնորդարան), ինչպէս նաև յաջողեցան յանձնել մեր հողային կալուածները՝ հակառակ դժուարին պայմաններու և երկրիս պատերազմական վիճակին։

Անվերապահօրէն էջմիածնական և իրատեսօրէն հայրենասէր Միացեալ Ազգային Ճակատը, որուն ցանկը կը բաղկանայ անբասիր, անշահախնդիր, ազգային ծառայութեամբ ծանօթ, մեծամասնութեամբ անկախ և երկու հայրենասէր ու էջմիածնասէր կազմակերպութիւններու ներկայացուցիչներէ, ընտրութիւններուն կը մասնակցի հետևեալ առաջադրութիւններով.—

1.— Պահել ու պաշտպանել գաղութիս էջմիածնական դիմագիծը՝ ընդդէմ անջատողական ձգտումներու.

2.— Փութացնել, որ Առաջնորդական Տեղապահ Գերշ. Տ. Զաւէն Եպս. Չինչինեան դառնայ Թեմիս Առաջնորդը.

(Շարունակութիւնը տես. էջ 6)

## ՄԱՅԻՍ 7Ի ԳԱՀԻՐԷԻ ԹԵՄԱԿԱՆ ՄԱՍՆԱԿԻ ԸՆՏՐՈՒԹԵԱՆՑ

## ՄԻԱՑԵԱԼ ԱԶԳԱՅԻՆ ՃԱԿԱՏԻՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԸ

**ԲՐՈՒՏԵԱՆ ԲԻՒԶԱՆԴ, ԹՈՐԳՈՄ**

Շահատուրքերու մասնագէտ-հաշուակալ և Նախկին երեսփոխան Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովի, Նախկին ատենադպիր Սղեքս. Քաղաքական Ժողովի և Պօղոսեան Ազգային Վարժարանի Հոգաբարձութեան, և անդամ Քննիչ Ցանձնաժողովի

**ԳԸԶԱՋԵԱՆ ՌՈՒԲԷՆ, ՄԻՍԱՔ**

Իսթըրն ընկերութեան Նախկին տնօրէններէն և Նախապէս ազգային երեսփոխան

**ԳՈՒԹՆՈՒԵԱՆ ՀՐԱՆԴ, ՅԱՐՈՒԹԻՒՆ**

Առևտրական, Նախկին երեսփոխան և Քաղաքական Ժողովի անդամ

**ԶՕՐԱՅԵԱՆ ԼՏՈՒԱՐ, ԱՐԹԻՆ**

Մասնագէտ-գործարանատէր

**ԺԱՄԿՈՉԵԱՆ ԵԱԳՈՒՊ (ՅԱԿՈԲ), ՄԵՍՐՈՊ**

Առևտրական, Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի վարչական

**ՀԱՄԲԻԿԵԱՆ ՀՐԱՉ (ՅԱԿՈԲ), ԳՐԻԳՈՐ**

Իսթըրն ընկերութեան հաշուապահութեան պատասխանատու տնօրէն և Նախկին Ազգային Երեսփոխան և Թեմական Ժողովի ատենադպիր, Կոկանեան Սրահի փոխ ատենապետ

**ՊԱԼԵԱՆ ԶԱՒԷՆ, ՄԱՐՏԻՐՈՍ**

«Ալ Գահիրա» դրամատան երկարամեայ պատասխանատու պաշտօնեայ և «Ջահակիր» շաբաթաթերթի վարչական տնօրէն

**ՊԵՏՐՈՍԵԱՆ ՆԵՐՍԷՍ, ՍԵՐՈՎԲԷ**

«Արև» օրաթերթի պատասխանատուներէն, անդամ Հ.Բ.Ը.Միութեան Եգիպտոսի Կեդրոնական Ցանձնաժողովի և Նախկին ազգային երեսփոխան և Քաղաքական Ժողովի անդամ

**ՊԸԼԸՔՃԵԱՆԵԱՆ ԱՐԹՕ, ՕՆՆԻԿ**

Քիմիական ճարտարագէտ Լիոնի Համալսարանէն, գործարանատէր և Նախկին ատենապետ Քաղաքական Ժողովի

**ՏԷՕՎԼԷԹԵԱՆ ՆՈՐԱՅՐ ՊԵՏՐՈՍ**

Սեփականատէր «Ոսկետառ» տպարանի և Հայ Գեղ. Միութեան բազմամեայ վարչական

**ՏԸՆԿՃԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ, ՄԻՍԱՔ**

«Լոթիւս» Պետական Ընկերութեան շինարարական Նախագծերու ընդհանուր պատասխանատու, Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի երկարամեայ վարչական

**ՔԵՀԵԱԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ, ԿԱՐԱՊԵՏ**

Գործարանատէր, ատենապետ Հ.Բ.Ը.Միութեան Եգիպտոսի Կեդրոնական Ցանձնաժողովի, պատուակալ Նախագահ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի և Նախկին ատենապետ Թեմական Ժողովի

